Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 7 ԱՊՐԻԼ 1950

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

# ԸՆԴՀԱՆՐԱՑՆԵԼ ԵՎ ԱՄՐԱՊՆԴԵԼ ՔԱՂԱՔԱԿԱՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները տեղի ունեցան Սովետական Միության աշխատավորների քաղաքական և աշխատանքային հսկայական վերելքի պայմաններում։ Ընտրությունները հանդիսացան բոլշևիկյան պարտիայի, Սովետական Կառավարության և ընկեր Ստալինի շուրջը սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության ու համախմբվածության հզոր ցույցը։

Ընտրությունների շրջանում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները մասսաների մեջ հսկայական ագիտացիոն-քաղաքական աշխատանք ծավալեցին։

Այժմ գլխավոր խնդիրն այն է, որպեսզի ընդհանրացվի ընտրությունների ընթացքում ծավալված քաղաքական աշխատանքի դրա-

կան փորձը, ամրապնդվեն ձեռք բերված հաջողությունները։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների շրջանում ռեսպուբլիկայում գործում էին 2345 ագիտկոլեկտիվ, մոտ 30 հազար ագիտատորներ։ Ընտրական բոլոր տեղամասերին կից կազմակերպված էին ագիտպունկտեր, որոնց թիվը մշտապես գործող ագիտպունկտերի հետ միասին հասնում էր 2240-ի։ Քաղաքական-մասսայական աշխատանքի կենտրոնը դարձել էր ագիտպունկտը։

Ընտրությունների ընթացքում պարտիական կազմակերպությունները հսկայական փորձ կուտակեցին աշխատավորների մեջ ըստ բնակավայրի քաղաքական աշխատանք տանելու բնագավառում։

Այժմ, ընտրություններից հետո, սխալ կլիներ այդ աշխատանքը դադարեցնել։ Քաղաքական աշխատանքը ընտրական նախկին տեղամասերում պետք է շարունակվի։ Այնտեղ, որտեղ հնարավոր է պետք է պահպանվեն ագիտպունկտերը։ Ագիտպունկտերում, ինչպես ընտրությունների շրջանում, պետք է կազմակերպել դասախոսություններ, զրույցներ՝ քաղաքական և կուլտուր-լուսավորական թեմաներով, ագիտպունկտերը պետք է ապ-



պահովել թերթերով, անհրաժեշտ գրականությամբ, պլակատներով և այլ նյութերով։

Ընտրությունների շրջանում պարտիական կազմակերպությունները հասան այն բանին, որ քաղաքական աշխատանք ծավալեցին ազգաբնակչության բոլոր խավերի մեջ, քաղաքական աշխատանք էր տարվում ամեն մի ընտրողի հետ։ Լայնորեն օգտագործվում էր ագիտացիոն աշխատանքի բոլոր ձևերը՝ զրույց, զեկուցում, դասախոսություն, կինոնկարների ցուցադրում, ինքնագործ խմբակների ելույթներ և այլն։ Կարևոր մոմենտ էր նաև այն, որ ագիտացիոն աշխատանքը տարվում էր դիֆերենցված, հաշվի էր առնվում աշխատավորների. տարբեր խավերի պահանջները։

Այս բոլորը այժմ պետք է ամրապնդել։ Գլխավոր խնդիրն այն է, որպեսզի ագիտացիոն աշխատանքը շարունակվի ըստ նախկին ընտրական տեղամասերի, լայնորեն կիրառվեն կոլեկտիվ և անհատական զրույցները։

Ընտրությունների շրջանում պարտիական կազմակերպությունները հսկայական աշխատանք կատարեցին ագիտկոլեկտիվների և ագիտատորների հետ։ Ագիտատորներին ցույց

տրվող այդ ամենօրյա օգնությունն ու ղեկավարությունը զգալիորեն բարձրացրեց ագիտացիոն աշխատանքի որակը, նրա գաղափարական բովանդակությունն ու քաղաքական նպատակասլացությունը: Սիստեմատիկորեն հրավիրվող սեմինարները, հրահանգավորումը, այն, որ ագիտատորները ապահովված էին քաղաքական գրականությամբ, թերթերով — այս բոլորը մեծապես նպաստեցին ագիտացիոն աշխատանքի գաղափարական բովանդակության բարձրացմանը:

Միանգամայն հասկանալի է, որ ագիտատորների հետ ընտրությունների շրջանում տարած այդ աշխատանքը պետք է շարունակել նաև այժմ, ընտրություններից հետո: Մինչդեռ կան այնպիսի պարտիական կազմակերպություններ, որոնք ընտրություններից հետո դադարել են ագիտատորների հետ աշխատանք տանելուց: Այսպես, Աղինի և Ախուրյանի շրջաններում ընտրություններից հետո ագիտատորների հետ ոչ մի աշխատանք չի տարվել: Եվ բոլորովին զարմանալի չէ, որ շատ կոլխոզներում ագիտ-կոլեկտիվները դադարել են գործելուց: Սրա հետևանքը եղել է այն, որ գարնանացանի այս եռուն օրերին



Աղինի շրջանի Տավշանղշլաղ, Նորաբեր, Գուսանգյուղ, իսկ Ախուրյանի շրջանի Արևիկ, Ղարիբջանյան գյուղերում կոլխոզնիկների մեջ ագիտացիոն աշխատանք չի տարվում:

Ընտրությունների շրջանում քաղաքական աշխատանքի ընդհանուր վերելքին մեծապես նպաստեց նաև այն հանգամանքը, որ պարտիական-սովետական ակտիվը սիստեմատիկորեն հանդես էր գալիս աշխատավորության առաջ քաղաքական զեկուցումներով: Բացի այդ, մեծ թափ ստացավ նաև դասախոսական աշխատանքը:

Այժմ պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրներից մեկն է — ամփոփել և ընդհանրացնել ընտրությունների շրջանում կատարած քաղաքական աշխատանքի փորձը, ամրապնդել ու տարածել այն, նոր թափ հաղորդել ագիտացիոն-մասսայական աշխատանքներին՝ ստալինյան նոր հնգամյակի վերջին տարում մեր ռեսպուբլիկայի առաջ ծառացած խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

Այժմ մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները սոցիալիստական մրցություն են դուրս եկել Հայաստանում սովե-

տական իշխանության հաստատման 30-րդ տարեդարձի պատվին: Նրանք կոնկրետ պարտավորություններ են վերցնում արտադրական պլանները ժամկետից շուտ՝ նոյեմբերի 29-ին կատարելու համար: Ագիտացիոն-քաղաքական աշխատանքը պետք է նպաստի սոցիալիստական մրցության հետագա ծավալման գործին, ստալինյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու գործին:

Լուրջ խնդիրներ են դրվում նաև գյուղական պարտիական կազմակերպությունների առաջ:

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը «Կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները գարնանացանի աշխատանքներին նախապատրաստելու մասին»— այս տարվա գյուղատնտեսական աշխատանքների մարտական ծրագիրն է:

Հիմնական խնդիրն ամենից առաջ այն է, որ այդ որոշումը հասցվի կոլխոզային բոլոր աշխատողների գիտակցությանը, լայնորեն բացատրվեն այն խնդիրները, որոնք դրված են մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների առաջ:



Այս տարվա գյուղատնտեսական աշխատանքների հաջող անցկացման համար հսկայական նշանակություն ունի արտադրական բրիգադայի ամրապնդումը, որպես կոլխոզում աշխատանքի կազմակերպման հիմնական ձև: Բրիգադայի տնտեսական-կազմակերպչական աշխատանքի բարելավման հետ միասին պետք է վերակառուցել նաև քաղաքական-մասսայական աշխատանքը: Բրիգադա պետք է ուղարկել լավագույն ագիտատորներին, որոնք ընտրությունների ժամանակ իրենց լավ են ցույց տվել: Բրիգադան պետք է ապահովված լինի թերթերով, քաղաքական և գիտա-պոպուլյար գրականությամբ, ցուցադրական ագիտացիայի նյութերով: Քաղաքական աշխատանքը պետք է ծավալել նաև տրակտորային բրիգադներում:

Ընկեր Միկոյանը իր նախընտրական ճառում մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների առաջ մարտական խնդիր դրեց՝ բարձրացնել բամբակի, ծխախոտի և տեխնիկական մյուս կուլտուրաների, ինչ-

պես նաև խաղողի և պտուղների բերքատվությունը, բարձրացնել անասնաբուծության մթերատվությունը։

Օգտագործելով ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ընթացքում կատարած քաղաքական աշխատանքի դրական փորձը, ագիտացիոն-քաղաքական աշխատանքը այժմ պետք է կազմակերպել այն հաշվով, որպեսզի հաջողությամբ լուծվեն մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջ դրված այդ մարտական խնդիրները։

—○—

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ

---

# ԼԵՆԻՆԻ ԳՈՐԾՆ ԱՆՄԱՀ Է

## (Վ. Ի. Լենինի ծննդյան 80-ամյակի առթիվ)

80 տարի առաջ, 1870 թվականի ապրիլի 22-ին (ն. տ.) Սիմբիրսկ (Ուլյանովսկ) քաղաքում ծնվեց բոլշևիկյան պարտիայի և Սովետական պետության հիմնադիր, ամբողջ աշխարհի աշխատավորների մեծ ուսուցիչ, առաջնորդ և բարեկամ Վլադիմիր Իլյիչ Լենինը։

Լենինը մեր դարաշրջանի մեծագույն ռևոլյուցիոն գործիչն էր, գիտության հանճարեղ կորիֆեյը։ Նա իր ամբողջ ուժն ու գիտելիքները նվիրեց կապիտալիզմի լծից աշխատավորների ազատագրման գործին, սոցիալիզմի հաղթանակի գործին։

Լենինը բարձրագույն տիպի առաջնորդ էր։ Նա իր մեջ զուգակցում էր «թեորիական հզորությունը պրոլետարական շարժման գործնական-կազմակերպական փորձի հետ» (Ի. ՍՏԱԼԻՆ)։

Վ. Ի. Լենինի և նրա հանճարեղ աշակերտ ու մարտական զինակից Ի. Վ. Ստալինի ղեկավարությամբ մեր երկրի պրոլետարիատը աշխատավոր գյուղացիության հետ դաշնակցած կատարեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ՝ կապիտալիզմի խորտակման և սոցիալիզմի հաղթանակի դարագլուխը։

Լենինը և Ստալինը կազմակերպեցին և գլխավորեցին սովետական ժողովրդի հերոսական պայքարը օտարերկրյա ինտերվենտների և սպիտակ-գվարդիականների դեմ, պաշտպանելով Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի մեծ նվաճումները։ Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ սովետական ժողովուրդը հասավ սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակներին և հաջողությամբ առաջ է ընթանում դեպի կոմունիզմ։

Սովետական ժողովուրդը իր աննախընթաց հաղթանակների, իր ամրակուռ, բոլոր փորձություններին դիմացած սովետական պետության, իր ազատ ու երջանիկ սոցիալիստական կյանքի համար պարտական է Լենինին և Ստալինին, մեծագործ բոլշևիկյան



պարտիային՝ մեր հասարակության ուղղություն տվող ու կազմակերպիչ ուժին։

Վ. Ի. Լենինը իր ռևոլյուցիոն գործունեության առաջին քայլերից ձեռնամուխ եղավ Ռուսաստանում մարքսիստական պարտիայի կազմակերպմանը։ Լենինը ուսուցանում էր, որ բանվոր դասակարգը, հանձին կոմունիստական պարտիայի ունենալով իր գաղափարական առաջնորդին ու ղեկավարին, կկարողանա տապալել բուրժուազիայի իշխանությունը, հաստատել պրոլետարիատի դիկտատուրա և կառուցել կոմունիստական հասարակություն։ Լենինը գիտականորեն հիմնավորեց բանվոր դասակարգի համար մարտական, ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի անհրաժեշտությունը, որն սկզբունքորեն պետք է տարբերվեր 2-րդ ինտերնացիոնալի պարտիաներից։ Լենինի մեծությունն այն էր, որ նա, տեսնելով 2-րդ ինտերնացիոնալի պարտիաների անպետքությունը պրոլետարիատի դիկտատուրայի համար մղվող պայքարում, մերկացրեց ու ջախջախեց Ռուսաստանում 2-րդ ինտերնացիոնալի պարտիաների տիպի պարտիա ստեղծելու մենշևիկյան պլանը։ Լենինը գլխավորեց նոր տիպի, ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի կառուցումը մեր երկրում, որը լիովին համապա-

տասխանում էր պրոլետարիատի դիկտատուրայի համար կապիտալիզմի դեմ ուղղակի գրոհ կազմակերպելու խնդիրներին։

Ստեղծելով մարքսիստական ռևոլյուցիոն պարտիան, բոլշևիկների պարտիան, Լենինը զինեց նրան ռևոլյուցիոն ծրագրով ու տակտիկայով, մշակեց պարտիայի իդեոլոգիական, կազմակերպական, տակտիկական ու թեորիական հիմքերը պատմական զարգացման նոր իրադրության լիովին համապատասխան։

Գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրների՝ Մարքսի ու Էնգելսի գործի հանճարեղ շարունակող Լենինը, գործելով պրոլետարիատի դասակարգային պայքարի նոր պայմաններում, իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում, ստեղծագործորեն զարգացրեց մարքսիստական թեորիան, հարստացրեց այն նոր դարաշրջանին համապատասխան նոր դրույթներով, և դրանով իսկ առաջ մղեց միջազգային պրոլետարական ռևոլյուցիոն շարժման զարգացումը, կազմակերպեց ու իրականացրեց պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակը աշխարհի մեկ վեցերորդ մասում։

«Լենինիզմն,— ասում է ընկեր Ստալինը,— իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյու-



ցիաների դարաշրջանի մարքսիզմն է։ Ավելի ճշգրիտ՝ լենինիզմը պրոլետարական ռևոլյուցիայի թեորիան ու տակտիկան է ընդհանրապես, պրոլետարիատի դիկտատուրայի թեորիան ու տակտիկան՝ առանձնապես»։

Ստալինյան այս հանճարեղ բնորոշման մեջ ցայտուն կերպով ընդգծված է լենինիզմի միջազգային նշանակությունը, նրա ինտերնացիոնալ բնույթը։ Լենինիզմը հզոր փարոսի պես լուսավորեց ու լուսավորում է ամբողջ աշխարհի աշխատավորների ուղին։

Լենինը, ջախջախելով կապիտալիզմի երկրպագուներին՝ 2-րդ ինտերնացիոնալի օպորտունիստներին, ցույց տվեց կապիտալիզմի նեխումն ու փտումը, նրա խորտակման անխուսափելիությունը պրոլետարական հաղթական ռևոլյուցիայի հարվածների տակ։

Լենինը հայտնագործեց իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության օրենքը, որը հանգեցրեց մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան հանճարեղ ուսմունքին։ Սոցիալիստական-ռևոլյուցիայի լենինյան այս նոր թեորիան վճռական նշանակություն ունեցավ մեր

երկրում պրոլետարական ռևոլյուցիայի բախտի համար, այն դարձավ բոլշևիկյան պարտիայի գործունեության ուղեցույցը, մեր երկրում սոցիալիզմի կառուցման մարտական ծրագիրը։

Լենինիզմի բոլոր թշնամիները, տրոցկիստական, զինովևական, բուխարինական, բուրժուա-նացիոնալիստական ճիվաղները, կապիտալիզմի այդ բոլոր վարձու բանդիտները, կատաղի գրոհ կազմակերպեցին պրոլետարական ռևոլյուցիայի ու սոցիալիզմի հաղթանակի լենինյան թեորիայի դեմ, որպեսզի տապալեին սոցիալիզմի կառուցման գործը մեր երկրում։

Եթե այսօր մենք վայելում ենք սոցիալիզմի առատ պտուղները և առաջ ենք շարժվում դեպի կոմունիզմ— մենք պարտական ենք մեծ Լենինին, պարտական ենք մեր բոլշևիկյան պարտիային, որը Լենինի գործի հանճարեղ շարունակող ընկեր Ստալինի գլխավորությամբ ջախջախեց ու հողմացրիվ արավ լենինիզմի բոլոր թշնամիներին և տարավ մեր երկիրը Լենինի մատնանշած ճիշտ ուղիով։

Ընկեր Ստալինը, պաշտպանելով մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի լենինյան



դրույթը, այն բազմակողմանիորեն զարգացրեց, մշակեց սոցիալիզմին անցնելու կոնկրետ ուղիները երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման հանճարեղ ուսմունքը։

Ընդհանրացնելով կապիտալիստական շրջապատման պայմաններում մեր երկրում հաղթանակած սոցիալիզմի փորձը, ընկեր Ստալինը հանճարեղ կերպով հիմնավորեց ՍՍՌՄ-ում կոմունիզմի հաղթանակի հնարավորությունը, մշակեց կոմունիզմի իրականացման ուղիները, որոշեց սովետական պետության մեծագույն դերը սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում։

Հենվելով 1905 թվականի և մանավանդ 1917 թվականի մասսայական ռևոլյուցիոն շարժման փորձի վրա, Լենինը հայտնագործեց սովետական իշխանությունը, որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձև, նոր տիպի պետություն, երբ իշխանությունը պատկանում է ոչ թե փոքրամասնություն կազմող շահագործող դասակարգերին, այլ բնակչության մեծամասնություն կազմող աշխատավորներին։

Լենինը ուսուցանում էր, որ սովետական պետության պատմական խնդիրը՝ սոցիալիս-

տական հասարակության կառուցումն է, որը հնարավոր է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման պայմաններում, գյուղացիությանը՝ բանվոր դասակարգի ղեկավարությամբ սոցիալիստական շինարարության մեջ ներգրավելու պայմաններում։

«Պրոլետարիատի դիկտատուրան պրոլետարիատի ու գյուղացիության աշխատավոր մասսաների դասակարգային դաշինքն է՝ կապիտալի տապալման համար, սոցիալիզմի վերջնական հաղթանակի համար, պայմանով, որ այդ դաշինքի ղեկավար ուժը պրոլետարիատն է հանդիսանում»։

Լենինը բոլշևիկյան պարտիայի գլխավոր խնդիրներից մեկը համարում էր աշխատավորությանը բոլոր ազգությունների եղբայրական դաշինքի ոգով դաստիարակելը։ Լենինը ջախջախիչ հարված հասցրեց բուրժուական-նացիոնալիզմի իդեոլոգիային, որը ձգտում էր պառակտել տարբեր ազգությունների աշխատավորությանը։ Ժողովուրդների իրավահավասարության, եղբայրական միասնության ու բարեկամության վեհ իդեան հաղթանակեց մեր երկրում։ Լենինի և



Ստալինի ղեկավարությամբ ստեղծվեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը՝ մեր երկրի ժողովուրդներին միավորող սոցիալիստական հզոր բազմազգ պետությունը։

Լենինի և Ստալինի հիմնադրած Սովետական պետության ուժն ու կենսունակությունը առանձնապես ցայտուն կերպով երևան եկավ 1941-1945 թ. թ. Հայրենական Մեծ պատերազմում։ Պատերազմը ցույց տվեց, որ սովետական հասարակական ու պետական կարգը հասարակության կազմակերպման լավագույն ձևն է և ամենակենսունակ կարգն է աշխարհում։ Ներկայումս չկա ավելի ամուր պետություն, քան ՍՍՌՄ-ն։

Բոլշևիկների պարտիան Լենինի մահից հետո համախմբվելով Լենինի գործի մեծ շարունակողի, մեր հանճարեղ առաջնորդ Ստալինի շուրջը, առաջ տարավ լենինիզմի դրոշը, ջախջախելով բոլոր թշնամիներին։

Մեծ Ստալինը պարտիայի և սովետական ժողովրդի անունից պատմական երդում տվեց Լենինի դագաղի առաջ՝ հավատարմաբար շարունակել Լենինի գործը, իրականացնել նրա վեհ պատգամները։

Սովետական ժողովուրդը, հաղթահարելով իր ճանապարհին բոլոր դժվարությունները, անցնելով բոլոր փորձություններից, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ իրագործեց Լենինի գլխավոր ավանդը— մեր երկրում կառուցեց սոցիալիստական հասարակարգ— կոմունիզմի առաջին փուլը։

Բոլշևիկյան պարտիայի լենինյան-ստալինյան իմաստուն քաղաքականությունն ապահովեց մեր երկրի արագ զարգացումը։ Պատմական շատ կարճ ժամանակամիջոցում Սովետական Միությունը անցավ տնտեսական ու կուլտուրական ծաղկման փառավոր ուղի։

Մեր երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ստալինյան քաղաքականության շնորհիվ Սովետական Միությունը դարձավ հզոր սոցիալիստական տերություն։ Լիկվիդացվեցին կապիտալիստական դասակարգերը, իսպառ ոչնչացվեց մարդու ձեռքով մարդու շահագործումը։ Հաստատվեց սովետական ժողովրդի բարոյական-քաղաքական անխորտակելի միասնությունը։



թյուն։ Բոլշևիկյան պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը Սովետական Միության բոլոր ազգերին հասցրրեց քաղաքական, տնտեսական ու կուլտուրական վիթխարի վերելքի, ստեղծեց ժողովուրդների բարեկամության անգերազանցելի օրինակ։ Սովետական Միության ժողովուրդների համախմբման ու զարգացման գործում մեծագույն դերը պատկանում է ռուս մեծ ժողովրդին։

Սովետական Միության ժողովուրդների մեծ ընտանիքում ծաղկեց ու բարգավաճեց նաև հայ ժողովուրդը։

Հայ ժողովուրդը խորին երախտագիտությամբ է արտասանում մարդկության մեծ հանճարների՝ Լենինի և Ստալինի անունները, որոնց նա պարտական է իր ազատագրությամբ ու վերածնությամբ։

Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ սոցիալիզմի կառուցման ճակատում սովետական ժողովուրդների ձեռք բերած պատմական նվաճումները գրանցված են և օրենսդրական կարգով ամրապնդված Ստալինյան մեծ Կոնստիտուցիայում։

Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, ընկեր Ստալինի ղեկավարությամբ Հայրենական Մեծ պատերազմում սովետական ժողովուրդը պատվով պաշտպանեց իր հոյակապ նվաճումները գերմանական ու ճապոնական իմպերիալիստներից, ամբողջ աշխարհի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ստրկացման սպառնալիքից։

Բոլշևիկյան պարտիայի լենինյան-ստալինյան վեհ իդեաները թևավորում էին և ոգեշնչում մեր ժողովրդին, հերոսական Կարմիր Բանակի ռազմիկներին, նրանց մղում առասպելական սխրագործությունների հանուն սովետական Հայրենիքի։

«...Պատերազմի ժամանակամիջոցում,— ասում է ընկեր Ստալինը,— պարտիան է՛լ ավելի հարազատ դարձավ ժողովրդին, է՛լ ավելի սերտորեն կապվեց աշխատավորների լայն մասսաների հետ»։

Բոլշևիկների պարտիան հետպատերազմյան ժամանակաշրջանում նոր խնդիրներ դրեց սովետական ժողովրդի առաջ, որոնք իրենց մարմնացումն են գտել ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման նոր հնգամյա պլանում։ Սովետական



մարդիկ, մեծ Ստալինի ղեկավարությամբ ընթանալով լենինյան ուղիով, մեծագույն խանդավառությամբ կենսագործում են նոր հնգամյակի խնդիրները։ Ընդամենը 4 և կես տարի է անցել, երբ սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ խաղաղ շինարարության, պատերազմից ստացած վերքերի բուժմանը և այդ կարճ ժամկետում ձեռք են բերվել հսկայական հաջողություններ։ Այդ հաջողությունները մեր սովետական հասարակարգի առավելությունների մեջ է՝ կապիտալիստականի համեմատությամբ սոցիալիստական սիստեմի վիթխարի գերազանցության մեջ։

Բուրժուական հարաբերությունների կապանքներից ազատ սովետական մարդը աննախընթաց տեմպերով առաջ է մղում իր երկրի արտադրողական ուժերը— ի շահ ամբողջ ժողովրդի։

Դեռևս Հոկտեմբերյան ռևոլյուցիայից կարճ ժամանակ առաջ Վ. Ի. Լենինը գրում էր.

«Միմիայն սոցիալիզմից կսկսվի բնակչության մեծամասնության, իսկ ապա ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող արագ, իսկական, բուն մասսայական առաջընթաց շարժումը հասարակական

և անձնական կյանքի բոլոր ասպարեզներում»։

Սոցիալիզմը արմատապես փոխեց աշխատանքի բնույթը. կապիտալիզմի օրոք ծանր ու տանջալից պարտականությունից այն մեր սովետական հասարակարգում փոխվեց պատվի գործի, արիության ու հերոսության գործի։

Սովետական մարդկանց ստեղծագործական վիթխարի ակտիվության վառ ցուցադրումն է սոցիալիստական մրցության լայն ծավալումը, որի մասին դեռևս 33 տարի առաջ հանճարեղորեն կանխատեսում էր մեծ Լենինը։

Մեր կյանքի բոլոր բնագավառներում, սովետական ամբողջ Միության մեջ, բանվորները, կոլխոզնիկները, սովետական ինտելիգենցիան ամենուրեք ցուցաբերում են վիթխարի նախաձեռնություն, ձեռներեցություն մեր երկրի արտադրողական ուժերի նոր, է՛լ ավելի վիթխարի վերելքի համար, որը կոմունիզմի կառուցման կարևորագույն պայմանն է։

«Աշխատանքի արտադրողականությունը,— ասում էր Լենինը,— վերջին հաշվով, ա-



մենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար։ Կապիտալիզմն ստեղծել է աշխատանքի մի արտադրողականություն, որպիսին տեսնված չէր ճորտատիրության օրով։ Կապիտալիզմը կարող է վերջնականապես պարտվել և վերջնականապես կպարտվի նրանով, որ սոցիալիզմըն ստեղծում է աշխատանքի նոր, շատ ավելի բարձր արտադրողականություն»։

Սոցիալիստական մրցությունը և նրա բարձրագույն ձևը՝ ստախանովյան շարժումը մեզ մոտ դարձել է համաժողովրդական։ Այժմ չկա մի գործարան, մի կոլխոզ, որտեղ ծավալված չլինի սոցիալիստական մրցությունը։ Այն ընդգրկել է համարյա ամբողջ բանվոր դասակարգը, կոլխոզային գյուղացիությունը։ Սոցիալիստական մրցությունը ամեն օր ծնում է աշխատանքային նորանոր հերոսներ ու հերոսուհիներ։

Նոր հնգամյակի կատարման համար մղվող պայքարի անցած չորս տարիները ակնառու կերպով ցույց տվեցին, որ սովետական ժողովուրդը Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ աշխատանքային հրաշքներ

է գործում ժամկետից շուտ կատարելով հնգամյակը:

Անգլո-ամերիկյան իմպերիալիստները հույս ունեին, որ երկրորդ համաշխարհային պատերազմում նյութական հսկայական վնասներ կրած մեր երկիրը տնտեսապես հետ կշպրտվի ամբողջ տասնամյակներով և դա հնարավորություն կտա նրանց տեր ու տնօրինություն անելու աշխարհում: Բայց այդ հարցում ևս տապալվեցին նրանց հաշիվները, ինչպես մյուս բոլոր հարցերում:

Սովետական հերոս ժողովուրդը, հենվելով իր սոցիալիստական տնտեսության առավելությունների վրա, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, մեր հանճարեղ առաջնորդ մեծ Ստալինի գլխավորությամբ ոչ միայն կարճ ժամանակամիջոցում բուժեց պատերազմից ստացած վերքերը, այլև խոշոր չափով առաջ անցավ նախապատերազմյան մակարդակից:

Արդեն հնգամյակի չորրորդ տարում, 1949 թվականի վերջում, մեր արդյունաբերությունը համախառն արտադրանքի թողարկման գծով գերազանցեց 1950 թվի՝ հետպատերազմյան հնգամյակի վերջին տարվա համար հնգամյա պլանով սահմանված մակարդակը:



Հնգամյա պլանով ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության արտադրանքի ծավալը 1950 թվին պետք է 48 տոկոսով գերազանցեր նախապատերազմյան 1940 թվի արտադրությանը, բայց արդեն 1949 թվի չորրորդ եռամսյակում արդյունաբերության համախառն արտադրանքի ամսական միջին թողարկումը 1940 թվի մակարդակը գերանցեց 53 տոկոսով:

Աշխատանքի արտադրողականությունը 1948 թվի համեմատությամբ աճել է 13 տոկոսով: Բարելավվել են արդյունաբերական արտադրանքի, մասնավորապես մասսայական սպառման արտադրանքի և սննդամթերքի որակն ու ասորտիմենտը:

Անցած տարին մեր երկրի գյուղատնտեսության համար նույնպես բարձր վերելքի տարի հանդիսացավ: Սոցիալիստական գյուղատնտեսության համախառն արտադրանքը ամբողջովին վերցրած անցած տարի գերազանցեց նախապատերազմյան 1940 թ. մակարդակը:

1948 թվականի համեմատությամբ ավելացավ հացահատիկային կուլտուրաների և տեխնիկական կուլտուրաների համախառն բերքը: Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմեց 7,6 միլիարդ

փուլթ, գերազանցելով նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը, գրեթե հասնելով 1950 թվականի համար սահմանված չափերին: Ցանքատարածությունները 1948 թ. համեմատությամբ ավելացել են 6 միլիոն հեկտարով: Կատարվել է աշնանացանի պետական պլանը, ցրտահերկ կատարվել է 8,3 միլիոն հեկտար ավելի, քան 1949 թվի բերքի համար:

Սովետական պետությունը գյուղատնտեսությանը հսկայական օգնություն է ցույց տալիս: 1949 թվականին մեր արդյունաբերությունը գյուղատնտեսությանը մատակարարել է 3—4 անգամ ավելի շատ տրակտորներ, ավտոմեքենաներ և գյուղատնտեսական մեքենաներ, քան նախապատերազմյան 1940 թվականին: Դրա հետևանքով բարձրացավ սոցիալիստական հողագործության կուլտուրան և գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակը: Ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում սովետական գյուղի էլեկտրիֆիկացիան:

Զգալի արդյունքներ են ձեռք բերվել հանրային անասնաբուծության զարգացման ասպարեզում: Մեր կոլխոզային գյուղացիու-



թյունը, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, ջանք ու եռանդ չի խնայում հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պետական պլանը կատարելու համար: Ներկայումս կոլխոզներն ունեն ավելի շատ հանրային մթերատու անասուններ, քան նախապատերազմյան 1940 թվականին: Բարելավվել է նաև անասունների ցեղային կազմը:

Հաջողությամբ է կատարվում բնության վերափոխման ստալինյան մեծ պլանը: Կոլխոզներն ու սովխոզները 1949 թվին գրեթե երկու անգամ գերակատարել են անտառատընկումների պլանը:

1949 թվականին չտեսնված ծավալ ստացավ կապիտալ շինարարությունը: 1948 թ. համեմատությամբ կապիտալ շինարարության ծավալը 1949 թ. աճեց 20 տոկոսով: Հետպատերազմյան հնգամյակի չորս տարում կառուցվել, վերականգնվել և գործարկվել են պետական արդյունաբերական 5.200 ձեռնարկություն, չհաշված պետական և կոոպերատիվ մանր ձեռնարկությունները:

Արդյունաբերության և գյուղատնտեսության աճը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, քարտային սիստեմի

վերացումից հետո կատարված գների իջեցումը հանգեցրեց աշխատավորների նյութական բարեկեցության անշեղ բարձրացմանը։

Անեց ՍՍՌՄ ազգային եկամուտը, 36 տոկոսով գերազանցելով նախապատերազմյան 1940 թվի մակարդակը, աճեցին բանվորների, ծառայողների, գյուղացիների եկամուտները, նույնպես զգալի չափով գերազանցելով 1940 թվականի մակարդակը։

Լենինի-Ստալինի պարտիան, սովետական պետությունը ցուցաբերում են մեծագույն հոգատարություն ժողովրդի բարեկեցության նկատմամբ։ Մեր երկրի աշխատավորների բարեկեցության հետագա աճն ապահովելու համար պատմական նշանակություն ունի 1950 թվականի մարտին տեղի ունեցած մասսայական պարենային սպառման և արդյունաբերական ապրանքների պետական գների նոր, երրորդ իջեցումը, որի հետևանքով բնակչությունը մեկ տարվա ընթացքում կշահի առնվազն 110 միլիարդ ռուբլի։ Այս փաստի մեջ վառ կերպով երևում է սոցիալիստական համակարգի առավելությունը կապիտալիստական համակարգի նկատմամբ։

Աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի անընդհատ աճը սոցիա-



լիստական պետության օրենքն է, մեր հասարակության զարգացման կարևորագույն օրենքը։ Մինչդեռ, կապիտալիստական հասարակարգում աշխատավորների կենսամակարդակը շարունակ իջնում է։ Միլիոնավոր աշխատավորներ դատապարտված են սովի, գործազրկության, ծայրահեղ թշվառության։

Մեծ հաջողություններ են ձեռք բերվել կուլտուրական շինարարության բնագավառում։ Էլ, ավելի ծաղկեց մեր գրականությունը, արվեստը, գիտությունը։ Սովետական գիտնականները տիրապետել են գիտության բարձրագույն նվաճումներին և խիզախորեն այն առաջ են մղում նոր բարձր աստիճանի։

Սովետական Միության այս հոյակապ հաջողությունները ոգեշնչում են ոչ միայն սովետական մարդկանց, այլև աշխարհի բոլոր աշխատավորներին, որոնք իմպերիալիզմի լծից իրենց ազատագրության և խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի գործի հաղթանակի վերաբերմամբ իրենց հույսերը կապում են ՍՍՌՄ-ի հարաճուն հզորության հետ։

Լենինյան մեծ ուսմունքը ավելի ու ավելի խոշոր ազդեցություն է թողնում ամբողջ համաշխարհային պատմության ընթացքի վրա։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում, սովետական պետության հաղթանակը երկրորդ համաշխարհային պատերազմում, ժողովրդական դեմոկրատիայի հաղթանակը Արևելյան և Կենտրոնական Եվրոպայում, չինական մեծ ռևոլյուցիայի հաղթանակը, ազգային-ազատագրական շարժումների հզոր վերելքը գաղութային և կախյալ երկրներում, կոմունիստական պարտիաների աճը ամենուրեք—ահա մեր դարաշրջանի համաշխարհային պատմական այն խոշոր իրադարձությունները, որոնք վկայում են լենինիզմի ամենահաղթ ուժի ու անպարտելիության մասին։

Լենինիզմը հաղթում է, որովհետև այն արտահայտում է բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների բուն շահերը, ճիշտ է որոշում հասարակության զարգացման օրինաչափությունները։

Պատմությունը հաստատեց Լենինի և Ստալինի հանճարեղ կանխատեսումները կապիտալիզմի ընդհանուր կրիզիսի հետագա զարգացման ու խորացման, կապիտալիստական սիստեմից մի շարք երկրների



հետագա ռևոլյուցիոն անջատման անխուսափելիության մասին։

Առաջին հաղթանակած սոցիալիստական երկրի՝ ՍՍՌՄ-ի շուրջն են համախմբվել սոցիալիզմի ընդհանուր լագերում Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Ալբանիայի ժողովուրդները, որոնք ՍՍՌՄ-ի օգնությամբ ազատագրվեցին իմպերիալիզմի լծից և այժմ կառուցում են իրենց ազատ սոցիալիստական կյանքը։ Սոցիալիզմի լագերի խոշոր հաղթանակն է Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի կազմվելը, որը նոր էջ բացեց Գերմանիայի և ամբողջ Եվրոպայի պատմության մեջ, որովհետև «խաղաղասեր դեմոկրատական Գերմանիայի գոյությունը խաղաղասեր Սովետական Միության գոյության կողքին, —ինչպես նշեց ընկեր Ստալինը,— բացառում է նոր պատերազմների հնարավորությունները Եվրոպայում, վերջ է դնում արյունահեղություններին Եվրոպայում և անհնարին է դարձնում եվրոպական երկրների ստրկացումը համաշխարհային իմպերիալիստների կողմից»։ Համաշխարհային իմպերիալիզմի սիստեմի համար նոր հզոր հարված է չինական ժողովրդական

Ռեսպուբլիկայի ստեղծումը և նրա եղբայրական համխտենական դաշինքը Սովետական Միության հետ։ Ստեղծված է Կորեական ժողովրդական ռեսպուբլիկան, որը պայքարում է իր լիակատար ազգային միավորման համար։ Կարևոր նշանակություն ունի Վյետնամի դեմոկրատական ռեսպուբլիկայի ստեղծումը։

Սոցիալիզմի լագերին պատկանող երկրները այժմ ունեն մոտ 800 միլիոն բնակչություն, որոնց գլուխն են կանգնած մարտերում փորձված ու կոփված կոմունիստական պարտիաները։

Անընդհատ ամրանում է սոցիալիզմի լագերին պատկանող երկրների տնտեսությունը. բարձրանում է ժողովրդի կենսական մակարդակը։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրները, իրենց տնտեսությունը փոխադրելով պլանային սոցիալիստական զարգացման ուղու վրա, լուրջ հաջողություններ են ձեռք բերել ինդուստրացման և գյուղատնտեսության վերելքի գործում։ Այդ երկրներում արդյունաբերության արտադրանքը գերազանցել է արդեն նախապատերազմյան մակարդակին։



Վիթխարի չափով ուժեղացել են բանվորական ռևոլյուցիոն շարժումները կապիտալիստական երկրներում։ Ուժեղացել է գործադուլային շարժումը կապիտալիզմի գլխավոր երկրում՝ ԱՄՆ-ում։

Ֆրանսիայում, Իտալիայում և այլ երկրներում բանվոր դասակարգը, կոմունիստական պարտիաների ղեկավարությամբ, վճռական հակահարված է հասցնում ու խորտակում ամերիկյան իմպերիալիզմին վաճառված իրենց ծախու կառավարությունների ռեակցիոն պլանները։

Արտասահմանյան կոմունիստական պարտիաները, ղեկավարվելով լենինյան-ստալինյան տակտիկայով ու ստրատեգիայով, գաղափարապես ու կազմակերպչորեն է՛լ ավելի են ամրապնդվել, հզորացել ու հմտացել բանվոր դասակարգի թշնամիների դեմ մղվող պայքարում։ Բոլոր կոմունիստական, բանվորական պարտիաները արժանի հակահարված տվին Հարավսլավիայում Տիտոյի բանդիտական կլիկին, որը փորձում էր իր տերերի՝ անգլո-ամերիկյան իմպերիալիստների պատվերով պառակտել սոցիալիզմի ու խաղաղության լագերը։

Սոցիալիզմի ու դեմոկրատիայի լագերի ուժերը օրեցոր բազմապատկվում են և հզորանում, մինչդեռ իմպերիալիզմի լագերը թուլանում ու քայքայվում է, գահավիժում է դեպի իր խորտակումը։ Կապիտալիստական երկրները գալարվում են օրեցօր ուժեղացող ու խորացող կրիզիսի ճիրաններում։ ԱՄՆ-ում և մյուս կապիտալիստական երկըրներում անընդհատ կրճատվում է արդյունաբերությունը, աճում է գործազրկությունը, մասսաների տնտեսական քայքայումն ու աղքատությունը։ «Մարշալի պլանի» օգնությամբ ամերիկյան իմպերիալիստները քայքայում են մարշալականացված երկրների տնտեսությունը, որը հասցնում է կապիտալիստական հակասությունների ու կրիզիսների է՛լ ավելի սրմանը։ Կապիտալիստական աշխարհում հաշվվում է արդեն համարյա 45 միլիոն գործազուրկ և կիսագործազուրկ։

Իմպերիալիստները սրվող հակասություններից դուրս գալու ելքը որոնում են նոր պատերազմ նախապատրաստելու մեջ։ Ամերիկյան իմպերիալիստները, գլխավորելով նոր պատերազմի տենդագին նախապատրաստությունը, երազում են ուժով իրակա-



նացնել համաշխարհային տիրապետության իրենց խելացնոր պլանները։ Ժողովուրդները Սովետական Միության գլխավորությամբ վճռական պայքար են ծավալել նոր պատերազմի հրձիգների դեմ։

Ի դեմս Սովետական Մեծ Միության ժողովուրդները տեսնում են խաղաղության գործի հզոր պատվարին։ Սովետական պետության լենինյան-ստալինյան խաղաղության հետևողական քաղաքականությունը ջերմ արձագանք է գտնում բոլոր երկրների աշխատավորների մոտ։

«Խաղաղության մեր քաղաքականությունը, — ասում էր մեծ Լենինը,— հավանություն է տալիս երկրագնդի բնակչության հսկայական մեծամասնությունը»։

Պատմության մեջ առաջին անգամ ստեղծվել է խաղաղության կողմնակիցների կազմակերպված հզոր ճակատ, որի առաջնորդն է խաղաղության ամենակայուն և անխոնջ մարտիկ մեծ ՍՏԱԼԻՆԸ։

Խաղաղության ճակատը, հիմնված Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների անընդհատ աճող հզորության վրա, ընդունակ է միացյալ ջան-

քերով խանգարելու իմպերիալիստներին նոր
պատերազմ հրահրելու գործում։

Չկա աշխարհում այնպիսի մի ուժ, որ
կանգնեցնի կոմունիզմի հաղթական առաջ-
ընթացը։

Սովետական ժողովուրդը, հետևելով Լենի-
նի և Ստալինի ցուցումներին, կանգնած է
երկու սիստեմների՝ սոցիալիստական և կա-
պիտալիստական սիստեմների խաղաղ մըր-
ցության տեսակետի վրա։ Այդ մրցությունից
նա չի վախենում, որովհետև նա գիտի, որ
մրցության մեջ հաղթողը մեր՝ սոցիալիստա-
կան սիստեմն է։ Սովետական ժողովուրդը
իր մեծ առաջնորդ Ստալինի ղեկավարու-
թյամբ վստահ ու հաստատակամորեն առաջ
է ընթանում լենինյան ուղիով—դեպի կոմու-
նիզմ։

Սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզ-
մի անցման այս պատմական ժամանակա-
շրջանում բոլշևիկների պարտիան նոր խըն-
դիրներ է դնում Սովետական ժողովրդի ա-
ռաջ։ Այս էտապում վճռական նշանակու-
թյուն է ստանում աշխատավորների կոմու-
նիստական դաստիարակությունը, նրանց
կուլտուրական մակարդակի բարձրացումը։
Պարտիան ելնում է Լենինի այն ցուցումից,



որ «սովետական պետությունը ուժեղ է մաս-
սաների գիտակցությամբ»։ Սոցիալիստա-
կան գիտակցությունը արագացնում է մեր
հասարակարգի առաջխաղացումը դեպի
կոմունիզմ։ Պարտիան անդուլ կերպով մեր
մարդկանց դաստիարակում է սովետական
հայրենասիրության, պրոլետարական ին-
տերնացիոնալիզմի, կոմունիզմի ոգով։

Պարտիան վճռական պայքար է տանում
բուրժուական իդեոլոգիայի և նրա առաջ
ստորաքարշության ամեն մի դրսևորման,
բուրժուական նացիոնալիզմի ռեցիդիվների
ամեն մի արտահայտության դեմ։ Մեր երկ-
րում կոմունիզմի կառուցման հոյակապ
խնդրի իրականացումը պահանջում է միլիո-
նավոր աշխատավորների ստեղծագործական
ակտիվության, նախաձեռնության անընդ-
հատ բարձրացումը։

Լենինի-Ստալինի պարտիան անխորտա-
կելի է մասսաների հետ ունեցած իր ան-
խզելի կապով։ Հենվելով այդ կապի վրա
պարտիան իրականացնում է սոցիալիստա-
կան շինարարության ամենաբարդ խնդիր-
ները։

1950 թվականի մարտի 12-ին ՍՍՌՄ Գե-
րագույն Սովետի ընտրության օրը սովետա-

կան ժողովուրդը կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին իր միահամուռ քվեարկությամբ մի անգամ ևս հաստատեց իր անսահման նվիրվածությունը Լենինի-Ստալինի պարտիային և Սովետական կառավարությանը, իր պատրաստակամությունը՝ պայքարելու պարտիայի առաջադրած բոլոր խնդիրները կենսագործելու համար։

Մեր կոմունիստական շինարարության հետագա հաջողությունների համար վճռական նշանակություն ունի քննադատության և ինքնաքննադատության ծավալումը։ Լենինը և Ստալինը սովորեցնում են, որ պարտիան անպարտելի է, եթե նա չի վախենում քննադատությունից և ինքնաքննադատությունից։

Լենինի գործի մեծ շարունակող ընկեր Ստալինը ուսուցանում է մեր պարտիային, սովետական մարդկանց՝ ապրել և աշխատել, պայքարել և հաղթել Լենինի նման, մշտապես հետևել Լենինի պատգամներին, հավատարիմ լինել լենինիզմին։

«Հիշեցե՛ք, սիրեցե՛ք, ուսումնասիրեցե՛ք Իլյիչին, մեր ուսուցչին, մեր առաջնորդին»— կոչ է անում ընկեր Ստալինը։



Լենինի անմահ գաղափարները մարմնավորված են ու զարգացած մեծ Ստալինի երկերում ու գործերում։ Ստալինը առաջ է տանում Մարքսի-Էնգելսի-Լենինի անպարտելի դրոշը։ Ստալինի անունը սովետական ժողովրդին մղում է դեպի առաջ, դեպի հաղթանակներ։ Ստալինը—դա հաղթանակ է։

Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ սովետական ժողովուրդը մեր երկրում կառուցեց սոցիալիզմ։

Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ Սովետական ժողովուրդը ընթանում է դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը։

Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ կհաղթանակի կոմունիզմի գործը ամբողջ աշխարհում։

>□<

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԼԵՆԻՆ-ՅԱՆ-ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ԱՆԽՈՐՏԱԿԵԼԻ Է

Լենինիզմի գաղափարների հաղթանակի վառ ցուցանիշներից մեկը ՍՍՌՄ ժողովուրդների անխորտակելի բարեկամությունն է։ Այդ բարեկամությունը եղել է և կլինի Սովետական պետության ուժի ու հզորության աղբյուրներից մեկը։

Քանի այդ բարեկամությունը գոյություն ունի,— ասում է ընկեր Ստալինը,— մեր երկրի ժողովուրդները կլինեն ազատ և անպարտելի։ Սովետական ժողովուրդների լենինյան-ստալինյան բարեկամության մեջ մարմնավորված են Լենինի և Ստալինի գաղափարները, մեր պարտիայի ծրագիրը ազգային հարցի վերաբերյալ։ Սովետական ժողովրդի առաջնորդները միշտ ասել են, որ ազգային ճնշման ոչնչացումը և ժողովուրդների լիակատար ազատությունը պայմանավորված է միայն պրոլետարական ռեվոլյուցիայի հաղթանակով։



Հոկտեմբերյան ռևոլյուցիան,— նշում է ընկեր Ստալինը,— ապացուցեց «ճնշված ժողովուրդների ազատագրման պրոլետարական; ինտերնացիոնալ մեթոդի՝ որպես միակ ճիշտ մեթոդի հնարավորությունն ու նպատակահարմարությունը... ամենատարբեր ժողովուրդների բանվորների և գյուղացիների եղբայրական դաշինքի հնարավորությունն ու նպատակահարմարությունը՝ հոժարակամության և ինտերնացիոնալիզմի հիմունքներով»։

Ազգային հարցի լուծման պրոլետարական, սովետական մեթոդը ելնում է այն բանից, որ բոլոր՝ մեծ և փոքր ազգերը իրավահավասար ու լիիրավ են բոլոր գործերում, բոլոր հարցերի լուծման մեջ։ Ժողովուրդների հավասարությունը նրանց բարեկամության ու համախմբվածության հիմքն է։

Սովետական իշխանության առաջին օրենքներից մեկը «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», որը հրապարակվեց 1917 թվականի նոյեմբերի 15-ին՝ Լենինի և Ստալինի ստորագրությամբ, ազդարարում էր Ռուսաստանի բոլոր ժողովուրդների հավասարությունը և սուվերենությունը, ազատ ինքնորոշման նրանց իրավունքը, ընդհուպ մինչև պետա-

կանորեն անջատվելը։ Այդ դեկլարացիայի հիմնական դրույթները իրենց հետագա զարգացումն ստացան այնպիսի փաստաթղթերի մեջ, ինչպես 1918 թվականի «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիան», որը գրեց Լենինը 1918 թվականի ամառը Սովետների 5-րդ Համամիութենական համագումարում ընդունած՝ ՌՍՖՍՌ Կոնստիտուցիայի մեջ, Սովետների 2-րդ համագումարում 1924 թվին ընդունված ՍՍՌՄ Առաջին Կոնստիտուցիայի մեջ։

Բոլշևիկյան պարտիայի և Սովետական կառավարության գործնական միջոցառումների նպատակն էր՝ իրականացնել այդ իրավունքները ադմինիստրացիայի, դատարանի, տեղական օրգանների, ազգային դպրոցի ստեղծման, ոչ-ռուս ազգություններին տնտեսական օգնության կազմակերպման և այլ միջոցներով։

Այդ բոլոր միջոցառումները ղեկավարելու համար Ժողովրդական Կոմիսարների Սովետի կազմում ստեղծվեց Ազգությունների Գործերի Ժողովրդական Կոմիսարիատ, որի անփոփոխ ղեկավարն էր ընկեր Ստալինը։ Ընկեր Ստալինին այդ պոստի համար առաջադրել էր Վ. Ի. Լենինը։



Ընկեր Ստալինը անմիջականորեն ղեկավարում էր ազգային ռեսպուբլիկաների ու մարզերի ստեղծումը և զարգացումը։

Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը կատարում էին սովետական ժողովուրդներին մեկ միասնական ընտանիքում համախմբելու ամբողջ հետագա աշխատանքը, քայլ առ քայլ ստեղծելով սոցիալիստական ռեսպուբլիկաների Միությունը։

Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտումից հետո, երբ սկսվեց խաղաղ զարգացման ժամանակաշրջանը, ծառացավ ռեսպուբլիկաների միջև ավելի սերտ հարաբերությունների անհրաժեշտությունը, քան պայմանագրական հարաբերությունները։

1922 թվի մարտ ամսին ստեղծված Անդրկովկասյան ֆեդերացիան իր առաջին համագումարում ընդունեց դիմում Ռուսաստանյան ֆեդերացիային, ապա Սովետական Ուկրաինային ու Բելոռուսիային՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միություն ստեղծելու մասին։

1922 թվի դեկտեմբերի 30-ին, Սովետների առաջին համագումարը ընկեր Ստալինի զեկուցման համաձայն ընդունեց դեկլարացիա և պայմանագիր Սովետական Սոցիալիստա-

կան Ռեսպուբլիկաների Միություն կազմելու
մասին։

Սկզբում Միության կազմի մեջ մտան 4
ռեսպուբլիկա՝ ՌՍՖՍՌ, Ուկրաինական, Բե-
լոռուսական ՍՍՌ և Անդրկովկասյան ՍՖՍՌ։

1925 թվին ՍՍՌՄ կազմի մեջ միութենա-
կան ռեսպուբլիկաների իրավունքներով ըն-
դունվեցին Թուրքմենական և Ուզբեկական
Սովետական Սոցիալիստական ռեսպուբլի-
կաները, իսկ 1929 թվին՝ Տաջիկական ՍՍՌ-ն,
որը մինչև այդ ավտոնոմ ռեսպուբլիկա էր
Ուզբեկական ՍՍՌ-ի կազմի մեջ։

Սովետների 8-րդ Արտակարգ համագու-
մարում 1936 թվին, Ստալինյան նոր Կոնս-
տիտուցիան ընդունելուց հետո, վերակազմ-
վեցին և Միութենական ռեսպուբլիկաների ի-
րավունքներով ՍՍՌՄ-ի մեջ մտան Ղազա-
խական ու Կիրգիզական ՍՍՌ-ները, որոնք
մինչև այդ ավտոնոմ ռեսպուբլիկաների իրա-
վունքներով մտնում էին ՌՍՖՍՌ-ի կազմի
մեջ։

Անդրկովկասյան ֆեդերացիայի վերաց-
ման կապակցությամբ միութենական ռես-
պուբլիկաների իրավունքներով ՍՍՌՄ կազմի
մեջ մտան նաև Վրացական, Ադրբեջանական
և Հայկական ՍՍՌ-ները։ Ստալինյան իմաս-
տուն արտաքին քաղաքականության շնորհիվ



նոր Կոնստիտուցիան ընդունելուց հետո Սո-
վետական Միությունը զգալիորեն ընդար-
ձակվեց։ Դրա հետևանքով 1940 թվի մարտին
Կարելական ԱՍՍՌ-ն վերակազմվեց Կարե-
լական Սովետական Սոցիալիստական ռես-
պուբլիկայի։

1940 թվի օգոստոսին Ավտոնոմ Մոլդավա-
կան ռեսպուբլիկան վերակազմվեց Մոլդա-
վական ՍՍՌ-ի։

Եվ վերջապես, 1940 թ. հուլիս-օգոստոսին
ՍՍՌՄ կազմի մեջ միութենական ռեսպուբ-
լիկաների իրավունքներով մտան Լիտվական,
Լատվիական ու Էստոնական Սովետական
Սոցիալիստական Ռեսպուբլիկաները։

Այսպես ստեղծվեց սովետական 16 ազատ
իրավահավասար ռեսպուբլիկաների կամա-
վոր միությունը։

«...ազգային ճնշման ոչնչացումը,— գրում
է ընկեր Ստալինը,— հասցրեց մեր երկրի ա-
ռաջներում ճնշված ազգերի ազգային վերա-
ծնությանը, նրանց ազգային կուլտուրայի
աճմանը, մեր երկրի ժողովուրդների բարե-
կամական ինտերնացիոնալ կապերի ամրաց-
մանը և սոցիալիստական շինարարության
գործում նրանց համագործակցության բարե-
լավմանը։

Պետք է հիշել, որ այդ վերածնված ազգե-

րըն արդեն հին, բուրժուական, բուրժուա-զիայի ղեկավարած ազգերը չեն, այլ նոր, սոցիալիստական ազգեր, որոնք ծագել են հին ազգերի փլատակների վրա և որոնց ղեկավարում է աշխատավոր մասսաների ինտերնացիոնալիստական պարտիան»։

Բայց ի՞նչ կերպ է Լենինի-Ստալինի պարտիան հին բուրժուական ազգերին վերափոխել, դարձրել սոցիալիստական ազգեր։ Դրա համար բավական չէր միմիայն այդ ազգերի քաղաքական ազատագրումը, նրանց միջև քաղաքական իրավահավասարության ստեղծելը։ Դա գործի միայն սկիզբն էր։

1921 թվին հանդես գալով պարտիայի 10-րդ համագումարում, ընկեր Ստալինը նշում էր, թե ազգային հարցի էությունն այն է, «որ ոչնչացնենք որոշ ազգերի այն փաստական (տնտեսական, քաղաքական, կուլտուրական) հետամնացությունը, որ նրանք ժառանգել են անցյալից, որ հետամնաց ժողովուրդներին հնարավորություն տանք հասնելու Կենտրոնական Ռուսաստանին թե՛ պետական, թե՛ կուլտուրական և թե՛ տնտեսական տեսակետներից»։

Զարգացնելով այդ մտքերը, ընկեր Ստալինը պարտիայի 12-րդ համագումարում խոսում էր մեր երկրի ժողովուրդների միջև



փաստական հավասարություն հաստատելու անհրաժեշտության մասին։

Հետամնաց ռեսպուբլիկաների էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքի, սեփական ազգային կադրեր աճեցնելու գործում օգնություն կազմակերպելու միջոցով պարտիան և կառավարությունը հասան այդպիսի հավասարության։

Մեր երկրում միշտ հատուկ ուշադրություն է դարձվել անցյալում հետամնաց ռեսպուբլիկաներին ու շրջաններին։ Մեր բոլոր ռեսպուբլիկաները դարձել են առաջավոր ինդուստրիալ-կոլխոզային ռեսպուբլիկաներ՝ զարգացող էկոնոմիկայով։

Տնտեսական ու քաղաքական հավասարության հիման վրա աճել է կուլտուրական հավասարությունը սովետական ժողովուրդների միջև։ Փարթամորեն ծաղկել է բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային կուլտուրան բոլոր ռեսպուբլիկաներում։

Սովետական իշխանության տարիներին 40 ժողովուրդների համար ստեղծվել է գիր։ Բուռն կերպով աճել է դպրոցների և մյուս ուսումնական հաստատությունների թիվը՝ առանձնապես ազգային ռեսպուբլիկաներում։

ՍՍՌՄ-ում սովորողների թիվը 1940 թվականին 1914/15 ուսումնական տարվա համե-

մասնաբաժնի աճել է 4 անգամ, իսկ Հայաստանում՝ 8 անգամ, Կիրգիզիայում՝ 44 անգամ, Ուզբեկստանում՝ 68 անգամ, Թուրքմենիայում՝ 660 անգամ։

Բոլոր ռեսպուբլիկաներում ստեղծված է ակումբների, գրադարանների, թատրոնների, կինոների լայն ցանց։

Հայաստանում վերջին տարիների ընթացքում գրադարանների թիվը աճել, 908-ից հասել է 1437-ի, ակումբային հիմնարկությունների թիվը 897-ից հասել է 1164-ի, կինոսարքավորումների թիվը՝ 196-ից 312-ի և այլն։

Գիտությունների ակադեմիաներ են ստեղծվել Ուկրաինական, Բելոռուսական, Հայկական, Ադրբեջանական, Վրացական, Ղազախական, Ուզբեկական, Լատվիական, Լիտվական և Էստոնական ՍՍՌ-ներում։ Շատ ռեսպուբլիկաներում կան ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի ֆիլիալներ ու բազաներ։

Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայում ներկայումս միավորված են 58 գիտահետազոտական հիմնարկներ՝ 1940 թ. 37-ի փոխարեն, իսկ գիտական աշխատողների կադրերը համապատասխանորեն աճել են՝ 414-ից հասնելով 918 մարդի։



***

Լենինյան-Ստալինյան ազգային քաղաքականության այդ արդյունքները օրենսդրականորեն ամրացված են Ստալինյան Կոնստիտուցիայում։

Մեր երկրի ժողովուրդների իրավահավասարությունը արտացոլված է նաև պետության գերագույն օրգաններում։ Գերագույն Սովետը կազմված է Միության Սովետից ու Ազգությունների Սովետից։ Վերջինս ներկայացնում է առանձին սովետական ազգերի շահերը երկրի Գերագույն օրենսդրական օրգանում։

Սովետական ժողովուրդների միջև փաստական հավասարության հիման վրա ստեղծվեց մեր պարտիայի կողմից սովետական հայրենասիրության ոգով դաստիարակված սովետական ժողովուրդների միաձույլ միասնությունը։

Հայրենական պատերազմը քննություն էր նաև մեր պարտիայի ազգային քաղաքականության համար, որը տրվեց փայլուն կերպով։

«Այժմ խոսքը վերաբերում է այն բանին,— ասել է ընկեր Ստալինը 1946 թվի փետրվարի 9-ին արտասանած իր ճառում,— որ սովե-

*տական պետական կարգը հանդիսացավ բազմազգ-պետության օրինակ, որ սովետական պետական կարգը պետական կազմակերպության այնպիսի սիստեմ է, որտեղ ազգային հարցը և ազգերի համագործակցության պրոբլեմը ավելի լավ են լուծված, քան որևէ այլ բազմազգ պետության մեջ»:*

*Եվ ընդհակառակը, ոչ մի կապիտալիստական պետության չի հաջողվել գեթ որևէ չափով լուծել ազգային հարցը: Ընդհակառակը, իմպերիալիստական պետությունները դարձել են ժողովուրդներին խեղդողներ թե երկրի ներսում և թե իրենց երկրի սահմաններից դուրս:*

*Բրիտանական կայսրության մեջ 547 միլիոն բնակիչներից 499 միլիոնը կազմում են գաղութային ու կախյալ ժողովուրդները, որոնց կեղեքում է անգլիական իմպերիալիզմը: Բուրժուական «դեմոկրատիզմի» գովաբանված երկրում՝ ԱՄՆ-ում 14 միլիոն նեգրեր գաղութային ստրուկների վիճակում են գտնվում: Յոթ նահանգներում նրանք բոլորովին զրկված են ընտրական իրավունքներից, իսկ մյուս նահանգներում նրանց ձևական իրավունքը չի ապահովված զանազան սահմանափակումներից ու չարաշահումներից:*



*17 նահանգներում նեգրերը իրավունք չունեն օգտվել դպրոցներից, որտեղ սովորում են սպիտակները, 15 նահանգներում հասարակական վայրերի դռները փակ են նրանց համար, 35 նահանգներում նրանց արգելված է ամուսնանալ սպիտակների հետ: Նեգր բնակչության համար կատարյալ կոշմար է հանդիսանում «Լինչի դատաստանը»:*

*Շատ ավելի վատ է գաղութային երկրների ժողովուրդների դրությունը, որոնք օր օրի վրա աղքատանում են, մշտապես քաղցի են մատնված և շարունակ քաղաքական, ազգային ու կրոնական ճնշման տակ են գտնվում:*

*Այստեղ ինարկե խոսք չի կարող լինել ազգային կուլտուրայի, գիտության զարգացման մասին: Օրինակ՝ Հնդկաստանի բազմամիլիոն ազգաբնակչության 92 տոկոսը անգրագետ են:*

*Ամերիկյան իմպերիալիզմը, քարոզելով անհայրենիք կոսմոպոլիտիզմի իդեոլոգիան, ներկայումս հանդես է գալիս ոչ միայն գաղութային ժողովուրդների, այլև զարգացած կապիտալիստական երկրների ժողովուրդների խեղդողի դերում: «Մարշալլի պլանը» քայքայում է այդ երկրների էկոնոմիկան, իջնում է ժողովրդական մասսաների կենսամա-*

կարգակը, աճում է ռեակցիան և ֆաշիզմը այդ երկրներում:

Սովետական Միության մեծ օրինակով լուծվում է ազգային հարցը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում՝ Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Ռումինիայում, Բուլղարիայում, Հունգարիայում, Ալբանիայում: Մեր օրինակին հետևում է բազմազգ Չինաստանը:

Ազգային-ազատագրական պայքարի են արթնացել Վյետնամի, Ինդոնեզիայի, Մալայայի և այլ երկրների ժողովուրդները:

Լենինյան-ստալինյան ոգով ազգային հարցի լուծմամբ ՍՍՌՄ-ը ցույց տվեց բոլոր ժողովուրդներին, որ հավասարությունն ու եղբայրությունը ժողովուրդների միջև անհրաժեշտ պայման է նրանց ազատ ու լիակատար զարգացման համար, որին խանգարում են բոլոր երկրների իմպերիալիստները՝ պատերազմի անգլո-ամերիկյան հրձիգների գլխավորությամբ: Ուստի բոլոր ազատասեր ժողովուրդները ավելի ու ավելի ակտիվորեն են մտնում խաղաղության համար մարտնչողների շարքերը, որոնց ղեկավարում է Սովետական Միությունը:

Օ. ԻՆՃԻԿՅԱՆ

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 30-ԱՄՅԱԿԻ ՊԱՏՎԻՆ ԾԱՎԱԼՎԱԾ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

1950 թվի նոյեմբերի 29-ին լրանում է Հայաստանում սովետական իշխանության հաստատման 30-րդ պանծալի տարեդարձը, որը զուգադիպում է ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան Ստալինյան հնգամյակի ավարտական տարվան: Սովետական Հայաստանը հանդիսանալով ՍՍՌՄ-ի իրավահավասար և ազատ ռեսպուբլիկաներից մեկը, բոլշևիկյան պարտիայի և Սովետական Կառավարության հոգատարությամբ կյանքի ու պայքարի փառավոր ուղի է անցել:

Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման ու բուռն վերելքի գործում խոշոր դեր խաղաց Անդրկովկասյան Ֆեդերացիան: Պատմականորեն կարճ ժամանակա-

միջոցում Անդրկովկասի եղբայրական ռեսպուբլիկաները՝ Վրաստանը, Ադրբեջանը և Հայաստանը ծաղկեցին և դարձան Միութենական ինքնուրույն ռեսպուբլիկաներ։ Հայ ժողովուրդը ինչպես միշտ, այնպես էլ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին մասնակցեց մեծագույն հաղթանակների նվաճմանը։ Միայն պատերազմի տարիներին Սովետական Հայաստանի հերոսական բանվորները հաջողությամբ յուրացրին ավելի քան 300 նոր տեսակի արտադրանք, կառուցեցին ավելի քան 70 նոր գործարան ու ֆաբրիկա։ Պատերազմի ծանր տարիներին ընկեր Ստալինի հոգատարությամբ Հայաստանում ստեղծվեց Գիտությունների Ակադեմիա, որը դարձել է ռեսպուբլիկայի գիտության և կուլտուրայի կենտրոնը։ Ընկեր Ստալինի առաջնորդությամբ, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ հայ ժողովուրդը ներկայումս հաջողությամբ կենսագործում է նոր հնգամյա պլանը։ Սովետական Հայաստանի արդյունաբերության զարգացման հարաճուն տեմպերի մասին է վկայում այն փաստը, որ հնգամյակի երկրորդ տարվա վերջում ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը գերազան-



ցեց նախապատերազմյան մակարդակը։ Խոշոր հաջողություններ է ձեռք բերվել սոցիալիստական գյուղատնտեսության, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի, գիտության բնագավառում։ Բայց հետպատերազմյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար պահանջվում է զգալի չափով արագացնել արդյունաբերության աշխատանքի տեմպը, էլ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական ստեղծարար մրցությունը։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները, նորակառույցները, բոլոր հնարավորություններ ունեն արտադրական պլանները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար։ Այդ նպատակով մեր հերոսական բանվորներն ու բանվորուհիները, ինժեներներն ու տեխնիկները լարում են բոլոր ուժերը, գործի են դնում բոլոր հնարավորությունները, որպեսզի հնգամյակը կատարվի ժամկետից շուտ։

Սովետական Հայաստանի աշխատավորության հայրենասիրական գործերից է ի պատիվ Հայաստանում Սովետական Հայաստանի 30-ամյակի ծավալված սոցիալիստական մրցությունը։ Ռեսպուբլիկայում մրցության դրոշը առաջինը բարձրացրեցին 1950 թվի ա-

ուշքին համայնքի պլանը ժամկետից շուտ
կատարած առաջավոր ձեռնարկությունների՝
Երևանի Կիրովի անվան գործարանի, Էլեկ-
տրամեքենաշինական գործարանի, Ավտոգո-
ղերի գործարանի, Զանգեզուրի Հանքվար-
չության, Երևանի Կաշվի գործարանի, Մա-
հուդի ֆաբրիկայի, Լենինականի Գուլպա-
տրիկոտաժի ֆաբրիկայի, երկաթուղու Երևա-
նի բաժանմունքի կոլեկտիվները: Այդ առա-
ջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները
Հայաստանի արդյունաբերության բոլոր աշ-
խատողներին ուղղված դիմումի մեջ պար-
տավորություն են ստանձնել՝ ամեն կերպ ա-
վելացնել արտադրության ծավալը, ընդլայ-
նել արտադրանքի թողարկումը, սիստեմա-
տիկորեն բարելավել աշխատանքի որակա-
կան ցուցանիշները, բարձրացնել աշխա-
տանքի արտադրողականությունը, բարելա-
վել թողարկվող արտադրանքի որակը, իջեց-
նել ինքնարժեքը:

Տարակույս չի կարող լինել, որ վերոհիշ-
յալ ձեռնարկությունների կոլեկտիվների
հայրենասիրական նախաձեռնությունը լայն
արձագանք կգտնի ռեսպուբլիկայի բոլոր աշ-
խատավորների կողմից:



Ի պատիվ Սովետական Հայաստանի 30-
ամյակի ծավալվող մրցությունը գլխավորե-
լու, առաջավորների փորձը տարածելու գոր-
ծում խոշոր դեր ունեն կատարելու ագիտա-
տորներն ու ագիտկոլեկտիվները: Նրանք, որ
քաղաքական-մասսայական աշխատանքի հա-
րուստ փորձ են կուտակել ՍՄԽՄ Գերագույն
Սովետի ընտրությունների ընթացքում, այժմ
այդ փորձը պետք է լիովին խայտ դնեն նոր
մրցության առաջավորների հաջողություննե-
րը պրոպագանդելու, բոլոր բանվորներին ա-
ռաջավորների մակարդակին հասցնելու հա-
մար: Ագիտատորները աշխատավորներին
պետք է հանգամանորեն բացատրեն ռես-
պուբլիկայի առաջավոր ձեռնարկություննե-
րի կոլեկտիվների կոչը, օգնեն, որ ամեն մի
ձեռնարկություն, ֆաբրիկա դառնա ստախա-
նովյան, ունենա ստախանովյան կոլեկտիվ
նվաճումներ:

— Հայաստանում սովետական իշխանու-
թյան հաստատման 30-րդ տարեդարձը նշա-
նավորենք ռեսպուբլիկայի արդյունաբերու-
թյան, գյուղատնտեսության և տրանսպորտի
բնագավառում ձեռք բերած նվաճումնե-
րով,— ահա թե գյուղում և քաղաքում ագի-
տատորները ինչի համար պետք է պայքարեն

այժմ։ Արդյունաբերական ձեռնարկություն-ների կոլեկտիվների օրինակով սոցիալիս-տական մրցություն է ծավալվում նաև կոլ-տնտեսային գյուղում։ Կոլտնտեսային ագիտատոր-ների խնդիրն է՝ ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանքով մոբիլիզացնել աշխատավորության բոլոր ուժերը գյուղա-տնտեսության նոր վերելքը կազմակերպելու, առանձնապես ռեսպուբլիկայում այգեգոր-ծության բերքատվությունը և անասնաբուծու-թյան մթերատվությունը բարձրացնելու հա-մար։

Ագիտատորների խնդիրն է՝ անձնական օ-րինակով և նվիրված աշխատանքով սոցիա-լիստական մրցության մեջ ապահովել հարա-ճուն ձեռնարկության, ֆաբրիկայի առաջնու-թյունը, Սովետական Հայաստանի 30-ամյա-կը դիմավորել նորանոր հաջողություններով։

—○—

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՔՐՈՒԺԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ԼԵՆԻՆԸ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԴԻՐՆ ՈՒ ԱՌԱՋՆՈՐԴՆ Է

1. Վ. Ի. Լենինը բոլշևիկյան պարտիայի, նոր տի-պի պարտիայի հիմնադիրը, առաջնորդը և ուսուցիչն է։

2. Վ. Ի. Լենինը աշխարհում առաջին Սովետական սոցիալիստական պետության ստեղծողն է։

3. Ի. Վ. Ստալինը մեծ Լենինի մարտական զինա-կիցը և նրա գործի հանճարեղ շարունակողն է։

4. Լենինի-Ստալինի պարտիան ՍՍՌՄ-ում սոցիա-լիզմի մեծ հաղթանակների ոգեշնչողն ու կազմակեր-պիչն է։

5. Սովետական ժողովուրդը, Լենինի անհաղթ դրո-

*շով լուսավորված, մեծ Ստալինի գլխավորությամբ համարձակ և վստահ կերպով ընթանում է դեպի կոմունիզմ։*

*6. Լենինիզմը ամբողջ աշխարհի աշխատավորների դրոշն է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Ի. Վ. ՍՏԱԼԻՆ: Լենինի մասին:

ՀամԿ(բ)Պ պատմություն: Համառոտ դասընթաց. *Նախաբանը։*

Համամիութենական Կոմունիստական (Բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեի դիմումը բոլոր ընտրողներին, բանվորներին ու բանվորուհիներին, գյուղացիներին և գեղջկուհիներին, սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի ռազմիկներին, սովետական ինտելիգենցիային: *«Ագիտատորի բլոկնոտ» № 4, 1950 թ.։*

Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդը և ուսուցիչը: Ի. Վ. Ստալինի *ծննդյան 70-ամյակի առթիվ։ «Ագիտատորի բլոկնոտ» № 24, 1949 թ.։*




*11*

# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՐՏԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ՍՏՈՒԳԱՏԵՍԻ ՕՐՆ Է

*1. Մայիսի 1-ը աշխատավորների միջազգային տոնն է։*

*2. Սովետական ժողովուրդը և բոլոր երկրների աշխատավորները մայիսմեկյան տոնը դիմավորում են խաղաղության համար մղվող պայքարի, ամբողջ աշխարհում դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի և համախմբվածության պայմաններում։*

*3. Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի կատարման ընթացքում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները։*

*4. ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի տարած փայլուն հաղթանակը սովետական հասարակարգի բարոյա-քաղաքական միասնության վառ ցուցադրումն է։*

*5. Սովետական ժողովրդի պատմական հաղթանակները ոգեշնչող օրինակ են ամբողջ աշխարհի աշխատավորների համար։*

*6. Մեր Հայրենիքի հզորության հետագա ամ-*

րապնդումը ամբողջ աշխարհում խաղաղության պահ-
պանման և ամրապնդման վճռական պայմանն է։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ։ Հոկտեմբերյան Սոցիալիստա-
կան Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը։ *Հայպետ-
հրատ, 1949 թ.։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ։ Ճառ, արտասանած Երևանի
Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտ-
րական ժողովում։ *«Ս. Հ.» 11 մարտի, 1950 թ.։*

Լենին-Ստալինի պարտիայի դրոշով։ *«Պրավդա»-ի
1950 թ. մարտի 16-ի առաջնորդողը, տպագրված
«Ս. Հ.» 1950 թ. մարտի 17-ի համարում։*

Աճում և ամրապնդվում է խաղաղության կողմնա-
կիցների ճակատը։ *«Պրավդա»-ի 1950 թ. մարտի
21-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի մարտի
22-ի համարում։*

Ժողովուրդները քվեարկում են հանուն խաղաղու-
թյան։ *«Պրավդա»-ի 1950 թ. ապրիլի 3-ի առաջնոր-
դողը, տպագրված «Ս. Հ.»-ի ապրիլի 4-ի համարում։*

Թող նավերժ ապրի սովետա-չինական բարեկամու-
թյունը։ *«Պրավդա»-ի 1950 թ. փետրվարի 16-ի
առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի փետրվարի
17-ի համարում։*




## III

## ԲՐԻԳԱԴԱՆ ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒ-ԹՅԱՆ ՄԵՋ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊ-ՄԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՁԵՎՆ Է.

*1. Բոլշևիկյան պարտիայի և սովետական կառա-
վարության միջոցառումները՝ ուղղված կոլխոզներում
աշխատանքի կազմակերպման լավացմանը։*

*2. Կայուն արտադրական բրիգադան արտելային
աշխատանքի կազմակերպման հիմնական ձևն է, որը
հնարավորություն է տալիս կոլխոզներում ավելի ար-
տադրողաբար օգտագործել ՄՏԿ-ների խոշոր մեքենա-
յական տեխնիկան և հենց իրենց՝ արտելների ար-
տադրական միջոցները։*

*3. Բրիգադայի և օղակի հարցում գյուղատնտեսա-
կան արտելի Կանոնադրությունից կատարվող շե-
ղումների և սխալների լիկվիդացիան կոլխոզնիկների
անհետաձգելի խնդիրն է։*

*4. Կոլխոզում կայուն արտադրական բրիգադայի
դերի բարձրացումը և աշխատանքի ճիշտ կազմակեր-
պումը գարնանացանը հաջող կատարելու և բարձր
բերք ստանալու գրավականն է։*

*5. Ինչպես է կազմակերպված աշխատանքը մեր
բրիգադայում գարնանացանը հաջող կատարելու հա-
մար։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ: Ճառ, արտասանած հարվածային կոլտնտեսականների Համամիութենական առաջին համագումարում: *«Լենինիզմի հարցերը»*, *էջ* 501—516:

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ: Ճառ, արտասանած Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում: *«Ս. Հ.» 11 մարտի, 1950 թ.*:

Գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրություն. 7-րդ գլուխ:

ՍՍՌՄ Մինիստրների Սովետում և ՀամԿ(բ)Պ Կենտկոմում: «Կոլխոզներ, ՄՏ կայաններ և սովխոզները գարնանացանին նախապատրաստվելու ընթացքի մասին»: *«Ս. Հ.» 18 մարտի 1950 թ.*:

Կոլխոզներում աշխատանքի կազմակերպման գործում թույլ տրված խեղաթյուրումների դեմ: *«Ս. Հ.» 24 փետրվարի 1950 թիվ, 2-րդ էջ*:

Գարնանացանի նախապատրաստության և անցկացման բոլշևիկյան ծրագիրը: *«Պրավդա»յի 1950 թ. մարտի 17-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի մարտի 18-ի համարում*:

—○—

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

*ԼԵՆԻՆ.*— Երկեր, 13-րդ հատոր: *684 էջ, գինը 8 ռ.*:

Ս. ՏԻՏԱՐԵՆԿՈ. Սովետական կարգերը ամենադեմոկրատական կարգերն են աշխարհում: *105 էջ, գինը 1 ռ. 50 կոպ.*:

Լ. Ն. ՏՈԼՍՏՈՅ.— Երկերի ժողովածու, *7-րդ հատոր: 611 էջ, գինը 20 ռ.*:

Լ. Ն. ՏՈԼՍՏՈՅ.— Երկերի ժողովածու, *8-րդ հատոր: 541 էջ, գինը 20 ռ.*:

Մ. ԳՈՐԿԻ.— Գրական հրապարակախոսական հոդվածներ: *478 էջ, գինը 15 ռ.*:

Միխ. ՇՈԼՈԽՈՎ.— Խաղաղ Դոնը, *գիրք երկրորդ: 493 էջ, գինը 18 ռ.*:

Ա. Լ. ՏՈԼՍՏՈՅ.— Տառապանքի ուղիներով, *տրիլոգիայի երրորդ մասը: 548 էջ, գինը 15 ռ.*:

ՍԵՐՎԱՆՏԵՍ.— Դոն Կիխոտ: *494 էջ, գինը 30 ռ.*:

Ա. ԿՈԹՈՂՅԱՆ.— Մեղվաբուծություն: *122 էջ, գինը 5 ռ.*:

---

Պատասխանատու խմբագիր՝ Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ